գագծին վրայ, Անդրյորդանանի սահմանէն 140 մղոն դէպի հարաւ)։ Անդրյորդանանի Պէնի Սախր ցեղախումբը, որ վերջերս Վէհապիներուն հետ ընդհարում մը ունեցած էր Նէճտի մէջ, կը կարծէ թէ Վէհապիներուն նպատակն է յարձակիլ Անդրյորդանանի վրայ՝ իրենց վերջին պարտութեան վրէժը լուծելու համար։ Սահմանապահ անգլիական ուժին պատկանողներէն անոնք որ արձակուրդի մէջ կը գտնուէին, ստիպողաբար պարտականութեան գլուխ հրաւիրուեցան. նոյնպէս անգլիական օդային ուժերու մէկ մասը Սարաֆէնտէն (Եաֆայի մօտ Անդրյորդանան փոխադրուեցան։

## Կացութիւնը Եգիպտոսի մէջ

Գահիրէէն կը հեռագրեն թէ կացութիւնը հանդարտած է Եգիպտոսի մայրաքաղաքին մէջ։ Թանթայի մէջ Հինգշաբթի օր ծագած խռովութեանց ընթացքին, ուսանողները կողոպտեցին 14 խանութներ, որոնց 8ը կը պատկանէին անգլիահպատակներու, գլխաւորապէս Մալթացիներ։ Բացի ուսանողներէ, ցոյցերուն մասնակցած էին նաեւ զանազան չարագործներ, որոնք Թանթայի ոստիկանատան վրայ յարձակելով, յաջողած էին ազատ արձակել իրենց ձերբակալուած ընկերները։

Հակառակ տօնական օր ըլլալուն, Ուրբաթ օր Գահիրէի մէջ ցոյցերը չեն կրկնուած։ Ոստիկանութիւնը կը հսկէ Վաֆտի կեդրոնին շուրջ։

## Համիտեան կալուածներու գայթակղութիւնը

Գրեցինք թէ կալուածային մեծ գայթակղութիւն մը երեւան հանուած է Քավալայի մէջ եւ որուն մեղսակից են Թրակիոյ եւ Մակեդոնիոյ քաղաքներուն, ինչպէս նաեւ Աթէնքի եւ Սելանիկի մէջ բնակող բազմաթիւ մարդիկ։ Հարցաքննութիւնները ամիսներէ ի վեր յառաջ կը տարուին մեծ արագութեամբ, այնպէս որ վերջերս կարելի եղաւ ձերբակալել՝ կալուածաթուղթեր կեղծող խմբակին բազմաթիւ անդամները, ինչպէս նաեւ Քէփթըն Պէննէթը, որուն ներկայացուցած անգլեւամերիկեան ընկերութեան նպատակն էր Սուլթան Համիտի պատկանող եւ մօտաւորապէս 80 միլիոն տոլարի արժէք ներկայացնող կարգ մը կալուածներու տիրանալ։ Այս ընկերութեան Աթէնքի գրասենեակներուն մէջ կատարուած խուզարկութիւն մը երեւան բերաւ բազմաթիւ կասկածելի փաստաթուղթեր, որոնք այս գործակալներու մեղսակցութիւնը կ՚ապացուցանեն կատարուած զեղծարարութեան մէջ։ Քէփթըն Պէննէթ անգլուհիի մը հետ կը կենակցէր Աթէնքի մէկ պանդոկին մէջ։

Սուլթան Համիտի ժառանգորդներուն փոխանորդ այս ընկերութիւնը առանձին դիմում կատարած էր նաեւ Լա Հէյի Միջազգային Իրաւարար Ատեանին։ Ժառանգորդները, բացի Յունաստանի կալուածներէն, կը պահանջեն նաեւ կարգ մը նաւթահորեր Պաղտատի եւ Կիպրոսի մէջ։ Ըստ այս ժառանգորդներու յայտարարութեան Համիտի ձգած կալուածային ժառանգութեան գումարը կը հասնի 500 միլիոն տոլարի, որուն 80 միլիոնը Յունաստան է, իսկ 420 միլիոնն ալ ուրիշ երկիրներու եւ մասնաւորապէս Թուրքիոյ մէջ։ Հարցաքննութիւններ պիտի կատարուին նաեւ Սելանիկի մէջ, ուր կան նոյնպէս այդ ընկերութեան գործակալները։

## 11 թուրք ժանտարմաներ ձերբակալուած

Թուրքեւսուրիական սահմանագլուխին վրայ, Քիլիսի մօտերը, Թրքական իշխանութիւնները բացած էին նոր պահականոց մը, տասը ժանտարմաներով եւ մէկ յիսնապետով։ Երկու շաբաթ առաջ ինքնաշարժով պտտող պահակներ կ՚անցնին պահականատան առջեւէն, որուն դուռները եւ պատուհանները գոց կը գտնեն։ Ի զուր դուռը կը զարնեն, ոչ ոք կուգայ բանալու։ Դուռ մը կը խորտակեն եւ կը տեսնեն որ բոլորն ալ ածուխի կրակարանի մը շուրջ հեղձամահ եղած էին։

## Րէշատ փաշայի սպանիչը

Թուրք դատական իշխանութիւնները ատենէ մը ի վեր քննութիւն կը կատարէին Նախկին Սուլթան Վահիտէտտինի անձնական բժիշկ Րէշատ փաշայի սպանութեան շուրջ եւ իբր սպանիչ ամբաստանուած էր Վահիտէտտինի թիկնապահը Չէքի։ Քննութեանց հետեւանքով, Չէքիին ոճիրը ստուգուած է եւ թուղթերը Եղեռնադատ Ատեանին յանձնուած են, ոճրագործը ի բացակայութեան դատելու համար։

## Անդրօշ նաւերը Թուրքիոյ մէջ

Այն բոլոր Թրքական շոգենաւերը, որոնց սեփականատէր ընկերութեան մէջ օտարահպատակ բաժնետէրեր կը գտնուին, Թրքական դրօշ չեն կրնար պարզել։ Այս կարգի շոգենաւերը չեն կրնար նաեւ օտար բաժնետէրերու կառավարութեանց դրօշները պարզել, քանի որ Թուրք բաժնետէրեր ունին. այնպէս որ կարգ մը նաւեր առանց դրօշի կ՚երթեւեկեն։

Տնտեսական Գործավարութենէն մօտ օրէն հրահանգ պիտի գայ այդ շոգենաւերու մասին, որոնց պիտի արգիլուի երթեւեկել Թրքական ջուրերուն մէջ։




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)
Le Gérant: H. TEURNIER


## Հ. Յ. ԴԱՇՆԱԿՑՈՒԹԻՒՆ

— Իսի լէ Մուլինոյ «Զաւարեան» եւ «Վանի Արամ» խումբերու ժողովրդայնոր Կիրակի ժամը 2.30ին, 164 Ave. de Verdun.

Պիլեանքուռ, «Զաւարեան» խումբի դասախօսական ժողովը այս առաւօտ ժամը 10ին, 28 rue Nationale։ Կը դասախօսէ Ընկ. ՎԱՀԱՆ ՓԱՓԱԶԵԱՆ։

## ՓԱՐԻԶԱՀԱՅ ՏՐԱՄԱԹԻՔ ԹԱՏԵՐԱԽՈՒՄԲԸ

Այսօր կիրակի գիշեր ժամը 8.45ին Sociétés Savantesի մէջ Մասնակցութեամբ պետական Թատրոններու դերասանուհի Տիկ. ԳՈՒՐԵԱՆ - ԱՐՄԷՆԵԱՆԻ՝ կը ներկայացնէ՝

**ՀԻՒՐԸ ԿԱՄ ՔՄԱՀԱՃՈՅՔԻ ՋՈՀԸ**
**ԱԴԱՄ — ԵՒԱ** (Զաւեշտ 2 արար

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՍԱՆԱՍԱՐԵԱՆ ժողովրդ. Համալսարանի պատգամաւորական ընդհ. բացառիկ ժողովը այսօր կիրակի առաւօտ ժամը 10ին, 61 Rue Monsieur le Prince.

ԺԱՍԱՆԱԿԱՑՈՅՑ ՍԱՆԱՍԱՐԵԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ
Այս առաւօտ, ցլօրիա, ժամը 10ին, ֆրանսերէն (դաւիթ բէկ)։

վաւերաթուղթերու վրայ, նման Ջինովիեւի կեղծ նամակին, զոր քանի մը օր առաջ հրապարակաւ դատապարտեցին 132 անգլիացի երեսփոխաններ եւ մէկ նախկին վարչապետ:

*Լիտվինոֆ փոխանակ ուղղակի պատասխան տալու Լորտ Քըշընտընի այն հարցումին թէ նո՞յն գիծին վրայ կը դնէ քաղաքացիական կռիւն ու ազգամիջեան կռիւները, եւ թէ կ՚ընդունի՞ վերջապէս թէ Մոսկուա իրաւունք չունի ուրիշ պետութեանց ներքին գործերուն խառնուելու, հակայարձակողականի անցաւ եւ իր կարգին ամբաստանեց անգլիական կառավարութիւնը թէ բոնի միջոցներով կը միջամտէ ուրիշ պետութեանց ներքին կեանքին՝ ինչպէս Չինաստանի եւ Պարսկաստանի:*

*«Եթէ, ըսաւ բոլշեւիկեան ծրագիրը կը հակասէ Ազգերու Դաշնակցութեան ուխտին, պէտք է փոխել զայն: Նոյն իսկ հաճոյքով պ՚տի վերաքննէինք բոլոր հաշտութեան դաշնագիրները: Գալով իր ծրագրին մանրամասնութեանց շուրջ եղած քննադատութիւններուն՝ պատրաստ է ամէն կարգի իրաւախոհութեանց:*

*Ամէնէն վերջ խօսք առաւ Ֆրանսայի պատուիրակ կոմս Քլօզէլ, որ Լիտվինոֆին դառնալով, ըսաւ.*

— Ինչպէս բոլոր առաջեալները, չէք գործածեր ձեր առաքելութեամբ, այլ մարտիրոսութեան ծարաւն ունիք: Դուք ձեզ մեր ճառերուն մէջ կ՚ենթարկէք, որպէսզի ամբողջ աշխարհ վկան ըլլայ ձեր գողգոթային: Բայց մենք չպիտի ճալածենք ձեզ: Պատրաստ ենք սրտաբաց վիճաբանելու անկեղծօրէն մեզի եղած բոլոր առաջարկներուն մասին:

*Վերջացնելով, կրկնեց Անգլիոյ պատուիրակին թելադրութիւնը, որուն համաձայն խորհրդային ծրագիրը պէտք է քննուի բոլոր պետութեանց կողմէ:*

## Կացութիւնը Ռումանիոյ մէջ

Պուքրէշէն կը հեռագրեն 22 մարտ թուականով. —

*Վարչապետ Պրըթիանու խորհրդարանային մեծամասնութեան խմբակցութեանց առջեւ զեկոյց տուաւ քաղաքական կացութեան մասին: Պատմական ըրաւ վերջին օրերս արտասահմանի մէջ գիւղացի-ազգայնական կուսակցութեան կատարած պայքարին, ծանօթ անձնաւորութեան մը (իշխան Կարոլ) այցելութեան ձեւին տակ:*

*Աւելցուց թէ ներկայ կառավարութիւնը վճռած է իշխանութեան գլուխ մնալ, երկրի բարօրութեան եւ սահմանադրական կարգի պահպանման համար: Երկրին պարտադրուած զոհողութիւններով, ազատական կառավարութիւնը հասած է վիճակի մը, որ թոյլ կու տայ անհրաժեշտ կայունացումն ընել երկրէն դուրս, ինչպէս նաեւ երկրէն ներս: Ազգայնական գիւղացիներու պայքարը վնասակար է երկրին համբաւին ու վարկին, ու ի վերջոյ իրենց դէմ պիտի դառնայ:*

*Եզրակացնելով, վարչապետը ըսաւ թէ Ռումանիոյ թշնամիները պիտի օգտուին ազգայնական գիւղացիներու պայքարէն:*

*.*. Նոր հեռագրի մը համաձայն, վարչապետը յայտարարած է թէ պաշտօնանկ պիտի հռչակէ բոլոր այն գիւղացի-ազգայնական երեսփոխաններն ու ծերակուտականները, որոնք 12 նիստերու պիտի բացակային: Խորհրդարանը յառաջիկայ երեք օրուան մէջ օրական չորս կարճ նիստեր պիտի ունենայ, ու այդ նիստերուն բացակայողները անմիջապէս հրաժարած պիտի նկատուին: Կառավարութիւնը որոշած է որ ազատական կուսակցութիւնը չպիտի մասնակցի այս ձեւով թափուր մնալիք երեսփոխանական աթոռներու նոր ընտրութեանց, այլ պիտի ձգէ որ այդ աթոռները գրաւուին զօրավար Աւէրէսքուի եւ փրոֆ. Եորկայի ընդդիմադիր կուսակցութիւնները: Կառավարութիւնը կարգը պիտի պահէ իր տրամադրութեան տակ եղած բոլոր միջոցներով:*

## ՖՐԱՆՍԱՅԻ ԱՌՆԵԼԻՔԸ ԿԱՐԳԱԴՐՈՒԱԾ

*Վարչապետ Պրըթիանու նոյն ժողովին մէջ հաղորդեց թէ՝ Փարիզէն նոր ստացուած է հեռագիր մը, որ կը ծանուցանէ թէ Ֆրանսայի, հանդէպ Ռումանիոյ ունեցած պատերազմական պարտքին համար կարելի եղած է կարգադրութեան մը յանգիլ: Այս պարտքին ընդհանուր գումարը կարելի եղած է 500 միլիոնէն 175 միլիոնի զեղչել, շնորհիւ Փուանքարէի աջակցութեան, որուն իր շնորհակալութիւնները յայտնեց վարչապետը եւ աւելցուց.*

—«Ֆրանսայի վարմունքը կ՚ապացուցանէ թէ Ռումանիա լքուած չէ եւ թէ ապահով բարեկամներ ունի: Ֆրանսայի հետ կարգադրութիւնը դիւրութիւններ կ՚ընծայէ Ռումանիոյ՝ լէյը կայունացնելու համար:»

## Ապտիւլ Մէճիտ կողոպտուած

*Վերջին խալիֆա Ապտիւլ Մէճիտ, Պոլսէն վտարուելէն ի վեր Եւրոպա կը բնակի եւ հաստատուած է Նիսի մէջ: Այս վերջին քաղաքէն հասած հեռագրի մը համաձայն, իր քարտուղարը Խալիլ պէյ մօտ 70.000 ֆրանք կողոպտած է Ապտիւլ Մէճիտէն եւ փախած:*

*Փախչելէ առաջ Խալիլ պէյ նամակ մը ձգած է Ապտիւլ Մէճիտ էֆէնտիի, խոստովանելով իր արարքը եւ աւելցնելով որ կամաց-կամաց գողցուած այդ 70.000 ֆրանքը խաղի մէջ կորսնցուցած է:*

## Ի՞նչ պիտի ըլլան ոսկիները

*Պանք տը Ֆրանսը զեկոյցով մը պաշտօնապէս կը հերքէ կարգ մը ամերիկեան եւ ֆրանսական թերթերու մէջ յայտնուած միտքերը: Պանք տը Ֆրանսի ներկայացուցիչներ Շարլ Ռիսթի եւ Քէնէի Նիւ Եորք այցելութեան եւ Ամերիկայէն Ֆրանսա ոսկի փոխադրուելուն առթիւ: Կ՚աւելցնէ թէ Ռիսթ եւ Քէնէ ոչ մէկ խօսակցութիւն ունեցած են ֆրանքին կայունացման մասին եւ թէ Ամերիկայէն ու Անգլիայէն Ֆրանսա բերուած ոսկիները ո՛չ թէ նոր գնուած են, այլ ամիսներէ ի վեր:*

## Մ. ՔԷՄԱԼ ՉԵԽՈՍԼԱՎԱՔԻՈՅ ՋԵՐՄՈՒԿՆԵՐԸ Կ՚ԵՐԹԱՅ

*Փրակայէն կը հեռագրեն թէ Մուսթաֆա Քէմալ փաշա ամառս վերջերը Չեխոսլովաքիոյ մէջ Սմոկովէկի ջերմուկները պիտի հասնի, դարմանուելու համար:*

## 1000 ձերբակալութիւն Ճափոնի մէջ

*«Իւմանիթէ» կը գրէ թէ Ճափոնի վերջին խորհրդարանական ընտրութեանց հետեւանքով ձերբակալուած են մօտ հազար հաւաքականներ: Ոստիկանութիւնը բացարձակապէս արգիլած էր թերթերուն մէջ ո եւ է բան գրել ձերբակալութեանց մասին: Լրացուցիչ տեղեկութեանց համաձայն, միաժամանակ խուզարկութիւններ կատարուած են Թոքիոյի, Եոկոհամայի, Նագոյայի, Կիոտոյի, Օզակայի, Կոբէյի, Օկոյամայի եւ այլ քաղաքներու մէջ:*




IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: H. TEURNIER

## Լիտվինոֆ նոր ծրագիր կը ներկայացնէ

Ժընեւի Զինաթափութեան Յանձնաժողովին մէջ վիճաբանութիւնները կը շարունակուին. Խորհրդային պատուիրակ Լիտվինոֆ տեսնելով որ իր ծրագիրը ընդհանուր մերժումի կ'ենթարկուի, յայտարարեց թէ նոր ծրագիր մը պիտի ներկայացնէ քննութեան համար։ Բացի Ռուսերէն եւ Գերմաններէն, միւս բոլոր պատուիրակութիւնները համաձայն էին որ խորհրդային առաջին ծրագրին երկրորդ ընթերցումը յետաձգուի։

Նախագահը յանուն Յանձնաժողովին պատասխանեց թէ ո եւ է յոյս չկայ որ խորհրդային երկրորդ ծրագիրը վիճաբանութեան ենթարկուի։

Լիտվինոֆ խստիւ բողոքեց։ Գերման պատուիրակ Կոմս Պէրնսթորֆ պաշտպանեց Լիտվինոֆը։ Ցաւ յայտնեց որ խորհրդային ծրագիրը կը մերժուի։ Յիշեց թէ Վէրսայլի դաշնագիրը զինաթափութեան մասին կը պարունակէ խոստումներ, որոնք չեն յարգուած։

Անգլիոյ պատուիրակ Լորտ Քըշընտըն գիտել տուաւ թէ Անգլիոյ մէջ միջոցներ ձեռք առնուած են՝ ցամաքային, ծովային եւ օդային սպառազինումները գեղչելու համար։ Ֆրանս. պատուիրակ Կոմս Քլօզէլ ալ յայտարարեց թէ հաշտութեան դաշնագրին մէջ տրուած խոստումը կապուած էր պարտաւորութիւններու, որոնք պէտք է գործադրուէին վեց ամիսէն մինչեւ մէկ տարուան պայմանաժամի մէջ, մինչ Գերմանիա տասը տարուան մէջ գործադրեց։

Բոլշեւիկեան նոր ծրագիրը կը նախատեսէ ներկայ սպառազինումներու կէսը կամ քառորդը գեղչել, համաձայն ներկայ վիճակին պետութեանց, որոնք դասակարգերու պիտի բաժնուէին։ 1928 Յունուարին գոյութիւն ունեցող ռազմանիւթերը պիտի պահպանուէին, բացի հրասայլերէ եւ երկար հասողութեամբ թնդանօթներէ։ Ծովային ուժերն ալ կէս կամ քառորդ չափով պիտի գեղչուէին. գալով օդային ուժին, բոլոր օդանաւերը մէկ տարուան ընթացքին զինուորականապէս անգործածելի վիճակի պիտի ենթարկուէին։

Բոլշեւիկեան նոր ծրագիրը նկատի չպիտի առնուի և Զինաթափութեան Յանձնաժողովը նոր նիստ մը պիտի գումարէ յառաջիկայ Յուլիսին։

Թուրք պատուիրակ Թէվֆիք Րիւշտի պէյ յայտնել թէ ցնորական է ռուսական ծրագիրը։ Ժամանակը չէ եկած դեռ, բաւ. զրախտը հաստատելու այս երկրին մէջ։

## Ինսան պէյ եւ ընկերները յանցապարտ

Էնկիւրիէն կը հաղորդեն թէ, Բարձրագոյն Ատեանի ընդհ. դատախազ Նիհատ պէյ երեքուկէս ժամ տեւող ճառ մը խօսելով պարզեց իր պահանջագիրը, որ հետեւեալ եզրակացութեան կը յանգի.

Ինսան, Ֆիքրէթ և Էօմէր Նազըմ պէյերը ընկերութիւն մը կազմելով ի վնաս պետութեան անձնական շահեր հետապնդած են «Եավուզի» խնդրին մէջ։ Գօնիչեցի Նուրէտտին և Սապանճացի Հագգը պէյերն ալ անոնց գործակցելով 250,000 ոսկի միջնորդչէք ստացած են կառավարութեան համար գնուած ապրանքներէն։

Այս գործին մէջ բուն յանցաւորն է Ինսան պէյ, իսկ միւսները երկրորդական մասնակիցներ են, որոնք բոլորն ալ խստիւ պէտք է պատժուին։ Ընդհ. դատախազը պատիժ պահանջեց նաեւ ծովային գործավարութեան նախկին խորհրդական Նէճաթի, Էտհէմ, Մուսթաֆա Լութֆի, Էմին, Մուսթաֆա Զիա, Նաֆի եւ փաստաբան Զիա պէյերու համար, որոնք թերացած են իրենց պարտականութեան կատարումին մէջ։

## Զիլէ-Սվազ երկաթուղին

Պելժ ընկերութիւնը Անատոլուի երկաթուղիներէն մէկ մասին շինութեան համար ստանձնած յանձնառութիւնները կատարած չըլլալով, պայմանագրութիւնը ջնջուած էր։ Այժմ այդ գիծերու շինութիւնը Թուրք կառավարութեան կողմէ նուազուրդի դրուած է։ Սվազ-Զիլէ գիծին վրայ 90 քիլոմեթրնոց մասի մը շինութիւնը ստանձնած է Թուրք երկրաչափներէ բաղկացած խմբակ մը։ Այս վերջինը անմիջապէս գործի ձեռնարկած է եւ 18 ամիսէն պիտի աւարտէ շինութիւնը։ Նուազուրդի պիտի դրուի նաեւ Կեսարիա-Սվազ գիծին վրայ 80-90 քիլոմեթրնոց մաս մը։

## Փարիզ-Ամերիկա անթելով

Յառաջիկայ շաբթուընէ, սկսեալ Փարիզցիները պիտի կրնան անթելով հաղորդակցիլ Նիւ Եորքի, Հավանայի կամ Սան Ֆրանչիսքոյի հետ։ Հաւանաբար Չորեքշաբթի օր առեւտրական նախարար Պոքանովսքի բացումը պիտի կատարէ Փարիզ-Նիւ Եորք գիծին, շնորհաւորական խօսքեր փոխանակելով ամերիկեան կառավարութեան ներկայացուցիչին հետ։ Յետոյ խօսքը պիտի տրուի մասնաւորներու, որոնք նախապէս դիմում կատարած են՝ Ամերիկայի իրենց բարեկամներուն հետ տեսակցելու համար։

Հաղորդակցութեան գինը ամէն քսակի մատչելի չէ։ Փարիզ-Նիւ Եորք գիծին վրայ 3 վայրկեանի խօսակցութեան համար գին նշանակուած է 1216 ֆրանք. Հավանայի կամ Սան-Ֆրանչիսքոյի հետ՝ 3 վայրկեանը 1593 ֆրանք։ 3 վայրկեանէն աւելի տեւող խօսակցութեանց՝ առեն, յաւելուածական իւրաքանչիւր վայրկեանի համար պիտի գանձուի 400 ֆրանք։

## Հայու մը «բարեկամուհի»ին մեռած

Ուրբաթ իրիկուան ժամը 5ին աւեններ Լանօ փողոց, թիւ 4 պանդոկին տէրը, իր յաճախորդներէն Լեւոն Խաչատուրեանի սենեակին մէջ մեռած գտաւ յիշեալի «բարեկամուհին», Օր. Ֆէրնանտ-Ժորժէթ-Օքթավի Սապրիէն, ծնած 1910 Հոկտ. 10ին և որ պանդոկի տոմարին մէջ արձանագրուած էր Սոլանժ Սապրիէ անունով։

Ոստիկանապետը անմիջապէս իմաց տուաւ Սորպոնի թաղին ոստիկանապետին եւ կանչեց բժիշկ մը, որուն բոլոր ջանքերը ի դերեւ ելան՝ կեանքի բերելու համար դեռատի աղջիկը։

Մահը կասկածելի նկատուելով, ոստիկանապետը իրաւաբժշկական հիմնարկութիւնը ղրկեց մարմինը՝ դիազննութեան համար։ Դիակը, որ ո՛ եւ է բռնութեան նշան ցոյց չի տար մանրակրկիտ քննութեան պիտի ենթարկուի։

Լեւոն Խաչատուրեան, որուն հետ կ'ապրէր Օր. Սապրիէ, բնիկ Պոլսեցի է, 24 տարեկան, եւ կ'աշխատի Հայ տպարանի մը մէջ իբրեւ մնքենավար։ Ոստիկանութիւնը պիտի հարցաքննէ նաեւ Խաչատուրեանը։



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis. Rue Lafayette Paris (10)

Le Gérant H. TEURNIER

տելով ճզմած է։ Միեւնոյն ատեն անարգական խօսքեր ըրած է Թուրքիոյ հասցէին։ Աղջիկը վտարուած է դպրոցին վարչութեան կողմէ։ Իր կարգին, կրթական վերատեսչութիւնը սկսած է քննել միջադէպը։

## «Լքեալ» գոյքերու գնուածները

Ազգային կալուածներու Ընդհ. Տնօրէն Բիւշտի պէյ Պոլիս գացած է, Պոլսոյ Լքեալ Գոյքերու Տնօրէնութեան վերաբերեալ գործերը քննելու համար։ Կ'ըսէ թէ մօտ ատենէն հարկ եղած բարենորոգումները պիտի կատարուին։ Ըստ օրէնքի պէտք է տասը միլիոն ոսկի արժէքով կալուած փոխանցել կալուածական Դրամատան։ Այս գումարը լրացնելէ յետոյ, մնացորդ կալուածները պիտի ծախուին։ Գալով «լքեալ» գոյքերուն, անոնք գաղթականներուն կը յատկացուին։ Հայերու «լքեալ» գոյքերը գաղթականներուն կը յանձնուին, առոր փոխարէն Տրապիզոնէն եւ ուրիշ վայրերէն «լքեալ» գոյքեր կը ստացուին։

«Ագշամ» կը տեղեկանայ թէ, նիւթական գործավարութիւնը չուզեր որ գոյութիւն ունեցող կալուածները ամբողջութեամբ գաղթականներուն յատկացուին, եւ կ'ուզէ որ միայն մեծ կալուածները ծախուին։ Նկատելով որ փոքր կալուածները արդէն գաղթականներուն յատկացուած են, պէտք չէ տեսնուած նոր օրէնք մը պատրաստել, եւ գոյութիւն ունեցող օրէնքը բաւական նկատուած է։

## Հակաբոլշեւիկ դաւ եւ ձերբակալութիւն

Վարշաւայէն կը հաղորդեն թէ. Ուկրայինայի մէջ իբրեւ հակայեղափոխական ձերբակալուած են 50 հոգի, որոնց մէջ գիտնականներ ու փրոֆէսորներ, ինչպէս Սիմոնովիչ եւ տաքթ. Զիկաշէնկօ։ Բժշկուհի Սուրովէովա եւ տօքթ. Պէտրէնիկ, երկուքն ալ Ուկրայինայի ընկերվարական կուսակցութեան անդամ, գնդակահարուած են։

Ուրիշ հեռագրի մը համաձայն, նոր դաւ մը երեւան հանուած է Ռուսիոյ դէմ, բոլշեւիկ վարչաձեւը տապալելու համար։

## Անգլիա եւ Արաբիա

Անգլիոյ երեսփ. ժողովի աղջի օրուան նիստին մէջ գաղթային նախարար էմըրի յայտարարեց թէ անձնապէս ո՛ եւ է խորհուրդ չէին հարցուցած իրեն 1927 Նոյեմբերին եւ 1928 Մարտ 1ին դէպի Հիճազ արտածուած 4.400.000 փամփուշտին արտօնագիր տալու համար։ Աւելցուց սակայն թէ այս ռազմանիւթերը Հիճազի թագաւորին ծախելէ առաջ արտաքին նախարարութեան հաւանութիւնը ստացուած է։ Իպն Սուուտ ո՛ եւ է մասնակցութիւն չունի կարգ մը ցեղախումբերու ռազմական գործունէութեանց հետ եւ ռազմանիւթ չի հայթայթեր անոնց։

∴ Պասրայէն կը հեռագրեն թէ անգլիացի փոքր օդանաւորդներ հասած են Իրաք։ Լաւատեղեակ շրջանակները կը հաւատան թէ մինչեւ ցուրտ օդերուն վերադարձը՝ վէհապետներու կողմէ յարձակման ամէն վտանգ անհետացած է։ Անապատի ջրհորները, որոնք այնքան կենսական են կռուողներուն համար, սկսած են չորնալ։ Վերջերս Իպն Սուուտ ետ կանչեց Աթայպա ցեղախումբէն 20.000 հոգի, որոնք կը յառաջանային դէպի Իրաքի սահմանագլուխը։

## Անդրատլանտեան արշաւներ

Գերման օդանաւորդ հարիւրապետ Քէօ'լէ աղջի օր Պերլինի մօտ Թէմփէլհոֆի օդանաւային կայանէն Իրլանտա մեկնեցաւ «Պրէմէն» օդանաւով եւ ընկերակցութեամբ ֆոն Հունէնֆէլտի և Շփէնտլէրի։ Ինչպէս կը յ'շուի, «Պրէմէն» անցած տարի Օգոստոս 14ին անգամ մը փորձած էր Ատլանտեանը կտրել մէկ թռիչքով, սակայն աննպաստ օդին պատճառաւ ստիպուած էր ետ դառնալ։

Օդանաւորդները իրենց ծրագիրը գաղտնի պահած էին, եւ նոյնիսկ Պերլինէն մեկնած ատեն միայն 360 լիտր պէնզին առած էին, կասկած չարթնցնելու համար։ Օդանաւորդները այժմ Իրլանտայի մէջ կըսպասեն լաւ օդի, ճամբայ ելլելու համար։ Պերլինէն մինչեւ Տըպլինի մօտ Պալտոնէլի օդանաւային կայանը, «Պրէմէն» 1500 քիլոմեդր ճամբան կտրեց ինը ժամէն, ժամական մօտ 166 քիլոմեդր արագութեամբ։

Պրէմէն «Յունքըր» օդանաւ մըն է, եւ ունի մէկ շարժանիւ, 270 ձիու ուժով։

## Միլիոնատէր Օրթոգի նամակը

Նիւ Եորքի թերթերը կը հրատարակեն պատճէնը նամակի մը, զոր դժբախտ օդանաւորդ Հինչքլիֆ գրած էր ամերիկացի միլիոնատէր Միս Մապէլ Պոլի՝ Ատլանտեանի արշաւը փորձելէ առաջ։ Այդ նամակէն կը հասկցուի թէ Օրթօրդը 5000 անգլիական ոսկի առաջարկած էր Հինչքլիֆի Ատլանտեանի արշաւին մէջ իրեն ընկերանալու համար։ Անգլիացին պատասխանած էր.

«Ես աղքատ մարդ մըն եմ, ու քանի որ 10.000 ոսկիի շատ մը առաջարկներ ստացած եմ՝ ձեր ինծի առաջարկած թռիչքը փորձելու համար, պատրաստ եմ ինծի եւ իմիններուս համար կարելի ամենամեծ օգուտը քաղել այս արկածախնդրութենէն։

Ու խոհեմութեան յորդոր կարդալէ յետոյ, կ'աւելցնէր.

«Դիւրաւ պիտի գտնէք ուրիշ օդանաւորդներ. բայց ուշադրութիւն ըրէք ձեր ընտրութեան։ Հարիւրաւորներ իրենց ծառայութիւնը պիտի առաջարկեն ձեզ. վստահեցէք միայն փորձ օդանաւորդի մը, որ լաւ մեքենայ մը ունի, ու լաւ օդով միայն ճամբայ ելէք։ Մանաւանդ մի կրկնէք սխալը Միս Ուիլսըն կրէյսիսի, որ իր անհամբերութեան տեղի տուաւ եւ հապճեպով ճամբայ ելաւ։ Պատրաստ եմ օգնել ձեզ, եթէ պէտք ունիք իմ խորհուրդներուս եւ քարտէսներուս։»

## Հրեաներուն երթեւեկը ազատ

Էնկիւրիէն պաշտօնապէս հրահանգ եկած է Պոլսոյ կուսակալութեան, որով Հրեաները կ'արտօնուին ազատօրէն երթեւեկել Անատոլուի մէջ։ Մարտ 21ին սկսած է գործադրուիլ այս հրահանգը։ Այժմ բոլոր Հրեաները կրնան ազատօրէն երթեւեկել երկրին ուեւէ մասին մէջ, առանց մասնաւոր արտօնութեան։

## ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

ՍՈՒՐԻՈՅ նոր ընտրութիւնները պիտի կատարուին Ապրիլ 10ին եւ 24ին։ Մարզպան փոնսօ եւ ընդհ. քարտուղար Մօկրա շաբաթ մը Փամասկոս մնալէ վերջ, Պէյրութ վերադարձան։

ՄԻԱՑԵԱԼ ՆԱՀԱՆԳՆԵՐՈՒ մէջ գործազրկութիւնը կը նուազի։ Աշխատանքի նախարարը կը յայտնէ թէ ներկայիս անգործներու թիւն է 1,874,050։



IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: H. TEURNIER

այդ մարզին մէջ գործունէութիւն ցոյց տալ։ Ընկերութեան անդամներուն թիւը օրէ օր կ'աւելնայ։ Կը կարծեմ թէ որոշուած է յարաբերութեան մէջ մտնել նաեւ միջազգային Կարմիր Խաչին եւ ուրիշ երկիրներու նման կազմակերպութեանց հետ։

Ընկերութիւնը գործօն կին անդամներ չունի, սակայն կիներն ալ կ'օժանդակեն անոր։ Մեր երկրին մէջ կիները, ուրիշ տեղ եղածին պէս, հանրային կեանքին մասնակցելու պէտք չեն տեսներ։ Պարսկաստանի ընկերային պայմանները այս իրաւունքէն կը զրկեն կիները, որով եւ անոնք չեն կրնար աշխատիլ հաստատութեանց եւ վաճառատուններու մէջ։ Ասոր պատճառն է կիներուն քօղարկուած ըլլալը։ Բնականաբար անկարելի է որ «փէչէ» կրող կին մը հանրային կեանքին մասնակցի։ Պէտք է ըսել սակայն թէ ցեղախումբերուն մէջ կիները այրերէն աւելի կ'աշխատին։ Գալով հագուստ-կապուստին, քաղաքներուն մէջ կիները քօղով եւ հին ազգային հագուստներով կը պտտին։ Սակայն անոնց տակէն արդիական զգեստներ կը հագնին, որով Ներկայիս Պարսկաստանի մէջ երկու տեսակ հագուստներ կան — ազգային եւ արդիական։

Դժբախտաբար թատերական կեանք չկայ Պարսկաստանի մէջ։ Կարգ մը անպաշտօն խումբեր Թէհրանի եւ ուրիշ մեծ քաղաքներու մէջ ներկայացումներ կուտան, սակայն չեն քաջալերուիր։ Կիները շատ քիչ թատրոն կ'երթան եւ այրերէն անջատ մասնաւոր տեղեր կը նստին։

Պարսիկ կառավարութիւնը մեծ կարեւորութիւն կ'ընծայէ հանրային կրթութեան։ Ներկայիս միայն նախակրթարաններու մէջ աղջիկներն ու մանչերը միասին կ'ուսանին։ Երկրորդական եւ բարձրագոյն կրթութիւնը առանձին դպրոցներու մէջ կը տրուի։ Բոլոր դպրոցներուն մէջ ալ Արիներու կազմակերպութիւն կայ, սակայն աղջիկները չեն մասնակցիր։

## Ամերիկեան դպրոցները Պարսկաստանի մէջ

Համատանէն կը գրեն Հայ Միրտի.— Համատանի ամերիկեան դպրոցները կառավարութեան կողմէ փակուելէ յետոյ յաճախակի դիմումներ եղան, բայց կառավարութիւնը գիջում չըրաւ։ Ամերիկացիներու խորհրդով հայ եւ հրեայ բողոքականները դիմումներ կատարեցին դպրոցներու վերաբացման համար։ Կրկին ապարդիւն։

Հայ բողոքականները կը պատճառաբանէին թէ մեր եկեղեցին անջատ է եւ դպրոցներն ալ կը պատկանին այն տարրին։ Բայց մինչեւ այսօր ամերիկեան դպրոցները փակ են։ Աշակերտներուն մէկ մասը կը յաճախէ ազգային դպրոցը, իսկ միւս մասը (նեղմիտ բողոքականներու զաւակներ) կը թափառին փողոցները։ Կը լսենք թէ կառավարութեան կողմէ հրահանգ է տրուած դպրոցները բանալ, պայմանով որ ոչ Ս. Գիրքը դասաւանդուի եւ ոչ ալ Ղուրանը։ Միսիոնարութիւնը համաձայն չէ այդ որոշման, քանի որ անոնց ծրագիրը Ս. Գիրքի դասաւանդութիւնն է, միւս առարկաները չեն հետաքրքրեր։

## Բրիանի պատասխանը Քէլլոկի

Նախարարական Խորհուրդի առջի օրուան նիստէն վերջ, Ուաշինկթըն հեռագրուեցաւ Բրիանի պատասխանը Ամերիկայի արտաքին Նախարար Քէլլոկի Փետրուար 27 թուակիր ծանուցագրին։ Ինչպէս կը յիշուի, այս ծանուցագրով Քէլլոկ կ'առաջարկէր փոխանակ միայն Ամերիկայի եւ Ֆրանսայի, բոլոր մեծ պետութեանց միջեւ կնքել դաշինք մը, որով պատերազմը կը դատապարտուի իբրեւ միջոց ազգային քաղաքականութեան։

Պատասխանին պատճէնը դեռ չէ հրատարակուած։

## Համայնավարները եւ ընկերվարականները

Ընտրական պայքարը սկսաւ եւ բոլոր կուսակցութիւնները իրարու հետ մրցումի ելած են՝ պրոպագանդի հաւաքոյթներ կազմակերպելու համար։

Առջի գիշեր ընկերվարականները 20րդ թաղամասին մէջ սարքած էին հրապարակային ժողով մը, ուր պիտի խօսէին Լէոն Պլում եւ Ալեքսանդր Լիւքէ։ Փիրէնէ-Փալասի սրահը լեցնող 1500 ընկերվարականներու շարքին սպրդած էին նաեւ կարգ մը համայնավարներ, գլխաւորութեամբ ընդհանուր քարտուղար Փիէր Սէմարի։

Նախագահ Ալֆոնս Լուայեօ հռետորները ներկայացնելէ վերջ, խօսք տուաւ Լէոն Պլումին։ Սակայն համայնավարները սկսան աղմկել եւ պահանջեցին, որ նախ Սէմար խօսի։ Պլում յայտնեց թէ հակառակութիւն չի վախնար, նախ ինք պէտք է խօսի, յետոյ խօսք կը տրուի նաեւ համայնավարներուն։ Այս վերջինները մտիկ չըրին։ Սէմար աթոռի մը վրայ ելաւ խօսելու համար, սակայն ընկերվարականները վար առին զայն, սուլելով։ Պլում մեծ դժուարութեամբ կրցաւ քանի մը խօսք արտասանել, ըսելու համար թէ ընկերվարական կուսակցութիւնը չէ փոխած իր վարդապետութիւնն ու ծրագիրը 1919էն ի վեր, երբ իրեն հետ նոյն ցանկին վրայ կը գտնուէին նաեւ մարդիկ, որոնք այսօր համայնավար դարձած են։

Աղմուկը տեւեց մօտ երկու ժամ եւ հաւաքոյթը վերջացաւ ընդհանուր խառնաշփոթութեան մէջ։

## 11,000 դատ Պոլսոյ մէջ

Թուրքեւհելլէն Խառն Դատարանին առջեւ Հելլէններու կողմէ Թուրք կառավարութեան եւ Թուրք անհատներու դէմ բացուած դատերուն թիւը 11.000ի հասած է։ Այս դատերուն մեծ մասը բացած են Պոլսէն եւ Իզմիրէն փախած Յոյները, իրենց կալուածներն ու գոյքերը ետ պահանջելով։ Յիշեալ դատերէն 600ը միայն նկատի առնուած են եւ 500էն աւելին դեռ կը շարունակուին։ Վճիռ տրուած է միայն 40-50 հատին համար։

Դիտել կը տրուի թէ Լօզանի դաշնագրին համաձայն Խառն Դատարաններու գործունէութիւնը Թուրքիոյ մէջ վերջ կը գտնէ, դաշնագրի վաւերացումէն երեք տարի յետոյ, եւ որովհետեւ այս ժամանակամիջոցը լմննալու վրայ է, կը կարծուի որ Թուրքեւհելլէն Ատեանը անկարող պիտի ըլլայ իր դատերը վերջացնելու։

Թուրքեւֆրանսական դատարանը, որ ամէնէն առաջ գործի սկսած էր, իր պայմանաժամը կ'աւարտէ երեք-չորս ամիսէն։ Անկէ վերջ կուգան հելլէնական, անգլիական եւ իտալական դատարանները։

«Հիլալը Ահմէր» կը տեղեկանայ թէ կառավարութիւնը համաձայն է որ Խառն Դատարանները իրենց սեղանին վրայ գտնուած դատերը աւարտեն Թուրքիոյ մէջ։



## Հ. Յ. Դ.

Փարիզի Եռագոյն խումբի ժողովը այսօր Շբ. երեկոյ ժամը 8.30ին 154 Ave. Argenteuil Asnières (Seine) կարեւոր օրակարգ։

Կրասի եւ Քանի խումբերու խորհրդակցական ընդհանուր ժողովը վաղը Կիրակի ժամը 2ին, Քանի մէջ սովորական հաւաքատեղին։ Կարեւոր օրակարգ։

Փարիզի Գոլամարտ խումբի ժողովը այսօր Շաբաթ իրիկուն ժամը 8.30ին, սովորական հաւաքատեղին։

Սէն Միշէլի «Քրիստափոր» խումբի ժողովը 2 Ապրիլ Երկուշաբթի երեկոյ ժամը 8.30ին Café Cluny. Bld. St. Michel. (Սէն Ժէրմէնի անկիւնը)։

Պիյանքուռ Զաւարեան եւ Վանի Արամ միացեալ խումբերու դասախօսական ժողովը վաղը Կիրակի ժամը 2.30ին, 164 Ave. de Verdun, Issy-les-Moulineaux: Կը դասախօսէ ընկ. Վ. Համբարձումեան, նիւթ՝ Հ. Յ. Դ. ծագումէն մինչեւ մեր օրերը։

Սէնթ-Էթիէնի Ենթակոմիտէի ժողովը վաղը Կիրակի ժամը 2.30ին, Փլաս տը Փէօփլը, թիւ 3 սրճարանին վերնայարկը։

Պելֆորի կոմիտէի ժողովը վաղը կէսօրէ վերջ ժամը 2ին, Քազէրն տ'Օֆֆըմօնի ակումբը։ Կարեւոր օրակարգ։



ՆԱՄԱԿԱՏՈՒՓ

Փրակա, Բ. Մ.— Ղրկեցինք «Հայրենիք»ին.— Ձեր ուզած հասցէն է.— André Ter Ohanian, 43 Rue des Ecoles, Paris:

Փրակա, Օ. Մ.— Ձեր բարեկամին հասցէն է՝ Collège Berberian, Haret-el-Daramalli No. 1 Choubra, le Caire, Egypte.



IMPRIMERIE - MASSIS - EDITIONS
208bis, Rue Lafayette Paris
Le Gérant: H. TEURNIER